Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2-52-78:*


---

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*1950 թվի փետրվարի 10-ին ՍՍՌՄ երկրորդ գումարման Գերագույն Սովետի լիազորությունները լրանալու կապակցությամբ, ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 54-րդ հոդվածի հիման վրա, որը սահմանում է, որ նոր ընտրությունները նշանակում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ՍՍՌՄ Գերագույն Սովետի լիազորությունները լրանալու օրվանից ոչ ավելի քան երկու ամսվա ժամկետում, և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 72-րդ հոդվածին համապատասխան, որը նախատեսում է, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների օրը հայտարարվում է ընտրությունների ժամկետից ոչ ուշ քան երկու ամիս առաջ և որ ընտրությունները տեղի են ունե-*



15-9451

*նում ոչ աշխատանքային օրում, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Նախագահությունը որոշում է՝*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները նշանակել 1950 թվի մարտի 12-ի կիրակի օրը։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Ն. ՇՎԵՐՆԻԿ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ*
*9 հունվարի 1950 թ.*

---

## ՄԻՈՒԹՅԱՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1950 թվի հունվարի 9-ի Հրամանագրով ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 34-րդ հոդվածի և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 24-րդ և 26-րդ հոդվածների հիման վրա ՍՍՌՄ տերիտորիայում կազմվել է Միության Սովետի ընտրությունների 671 ընտրական օկրուգ։*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ԿԱԶՄՎԵԼ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

*657. ԵՐԵՎԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Երևան)։*

*Քաղ. Երևան։*

*658. ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Լենինական)։*

*Լենինական քաղաքը և Արթիկի, Ամասիայի, Թալինի, Աղինի, Ախուրյանի, Ղուկասյանի ու Սպիտակի շրջանները։*

**659. ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Կիրովական)։

Կիրովականի, Ալավերդու, Ստեփանավանի, Դիլիջանի, Իջևանի, Շամշադինի, Կալինինոյի, Նոյեմբերյանի, Կրասնոսելսկի և Սևանի շրջանները։

**660. ՆՈՐ ԲԱՅԱԶԵՏԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Նոր Բայազետ)։

Նոր Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի, Ազիզբեկովի, Ղափանի, Գորիսի, Սիսիանի, Միկոյանի, Մեղրու և Կոտայքի շըրջանները։

**661. ԷՋՄԻԱԾՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Էջմիածին)։

Էջմիածնի, Ապարանի, Ախտայի, Աշտարակի, Հոկտեմբերյանի, Ջանգիբասարի, Արտաշատի, Բերիայի և Վեդու շրջանները։



ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1950 թվի հունվարի 9-ի Հրամանագրով ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 35-րդ հոդվածի և «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» 25-րդ և 26-րդ հոդվածների հիման վրա ՍՍՌՄ տերիտորիայում կազմվել է Ազգությունների Սովետի ընտրությունների 631 ընտրական օկրուգ։



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ԿԱԶՄՎԵԼ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

**301 ԵՐԵՎԱՆԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Երևան, Ստալինյան ռայսովետ)։

Երևան քաղաքի Ստալինյան ռայոնը։

**302. ԵՐԵՎԱՆԻ ՄՈԼՈՏՈՎՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Երևան, Մոլոտովյան ռայսովետ)։

Երևան քաղաքի Մոլոտովյան ռայոնը։

**303. ԵՐԵՎԱՆԻ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Երևան, Սպանդարյանի ռայսովետ)։

Երևան քաղաքի Սպանդարյանի ռայոնը։

**304. ԵՐԵՎԱՆԻ ԿԻՐՈՎՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Երևան, Կիրովյան ռայսովետ)։

Երևան քաղաքի Կիրովյան ռայոնը։

**305. ԲԵՐԻԱՅԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ Բերիայի անվան ավան)։

Բերիայի և Աշտարակի շրջանները։

**306. ԱԼԱՎԵՐԴՈՒ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ** (կենտրոնը՝ քաղ. Ալավերդի)։

Ալավերդու և Նոյեմբերյանի շրջանները։

307. ԱՄԱՍԻԱՅԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Ամասիա գյուղ)։

Ամասիայի և Ղուկասյանի շրջանները։

308. ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Լենինական, Լենինականի քաղսովետ)։

Լենինական քաղաքը, բացի այն տերիտորիայից, որը մտցված է Ախուրյանի ընտրական օկրուգի մեջ։

309. ԱԽՈՒՐՅԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Լենինական)։

Լենինական քաղաքը Ծուլուկիձեի, Մայակովսկու, Շահումյանի, Կիրովի, Գործարանային, Ռուսթավելու փողոցների սահմաններում և Ախուրյանի գյուղական շրջանը։

310. ԿԻՐՈՎԱԿԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Կիրովական)։

Կիրովականի և Սպիտակի շրջանները (բացի Գեղարոտի. Փամբի և Միլքարի գյուղսովետներից)։

311. ԴԻԼԻՋԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Դիլիջան ավանը)։

Դիլիջանի, Կրասնոսելսկի և Սևանի շրջանները (Գոմաձորի, Ծովագյուղի, Չկալովկայի. Լճաշենի գյուղսովետները և Սևան ավանը)։



312. ԱԽՏԱՅԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Ներքին Ախտա գյուղը)։

Ախտայի և Սևանի շրջանները (Գեղամավանի, Վարսերի, Ծաղկունքի, Դդմաշենի և Յայջիի գյուղսովետները)։

313. ՄԱՐՏՈՒՆՈՒ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Մարտունի գյուղը)։

Բասարգեչարի և Մարտունու շրջանները (Ծովինարի, Ներքին Ալուչալուի, Վերին Ալուչալուի, Գյոզալդարայի, Վարդենիկի, Զոլաքարի. Աստղաձորի, Մարտունու և Վաղաշենի գյուղսովետները)։

314. ՆՈՐ ԲԱՅԱԶԵՏԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Նոր Բայազետ)։

Նոր Բայազետի և Մարտունու շրջանները (Վերին Գետաշենի, Ներքին Գետաշենի, Ադամխանի, Երանոսի, Լճաքի. Թազագյուղի, Զորագյուղի, Քարաձիի, Մադինայի, Ծակքարի և Ղարանլուղի գյուղսովետները)։

315. ԱՐՏԱՇԱՏԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Արտաշատ ավանը)։

Արտաշատի և Վեդու շրջանները (Ավշարի, Այգավանի, Ալմամեդի, Արարատի, Արմաշի, Վեդու, Ենգիջայի, Ենիքենդի, Կարալարի, Քյաչիկ Վեդու, Նոր կյանքի, Թայթանի, Խալիսայի, Շիդլուի, Շիրազլուի գյուղսովետները, Արարատ և Կիրովի անվան ավանները)։

316. ՄԻԿՈՅԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Միկոյան գյուղը)։
Միկոյանի և Ազիզբեկովի շրջանները։
317. ԿՈՏԱՅՔԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Քանաքեռ ավանը)։
Կոտայքի և Վեդու շրջանները (Ազիզքենդի, Բայբուրդի, Բիրալիի, Գյոլասորի, Իմրըզիկի, Ղարաբաղլարի, Ղարախաչի, Ղաշղաջի. Քյոթուզի, Քյոյանլուի, Մանկուքի, Մեծ Գիլանլարի, Ջանախչիի, Ջիմանքենդի և Ճաղափլուի գյուղսովետները)։
318. ՍՏԵՓԱՆԱՎԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Ստեփանավան)։
Ստեփանավանի և Կալինինոյի շրջանները։
319. ԱՐԹԻԿԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Արթիկ)։
Ալինի և Արթիկի շրջաններր (բացի Ախուլայի, Գեղաձորի, Քարվանսարայի և Հընաբերդի գյուղսովետներից)։
320. ԱՊԱՐԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Ապարան գյուղը)։
Ապարանի և Արթիկի շրջանները (Ախուլայի, Գեղաձորի, Քարվանսարայի, Հնաբերդի գյուղսովետները) և Սպիտակի շրջանը (Գեղարոտի, Փամբի և Ծիլքարի գյուղսովետները)։



321. ԻՋԵՎԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ Իջևան գյուղը)։
Իջևանի և Շամշադինի շրջանները։
322. ԷՋՄԻԱԾՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Էջմիածին)։
Էջմիածնի և Ջանգիբասարի շրջանները։
323. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐԱՐԳ (կենտրոնը՝ քաղ. Հոկտեմբերյան)։
Հոկտեմբերյանի և Թալինի շրջանները։
324. ԳՈՐԻՍԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Գորիս)։
Գորիսի և Սիսիանի շրջանները։
325. ՂԱՓԱՆԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳ (կենտրոնը՝ քաղ. Ղափան)։
Ղափանի և Մեղրու շրջանները։

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 26-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

26 տարի առաջ՝ 1924 թվականի հունվարի 21-ին մեռավ սոցիալիստական ռևոլյուցիայի մեծագույն հանճար, բոլշևիկների պարտիայի հիմնադիր և ղեկավար, սովետական պետության ստեղծող, ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Լենինի անպարտելի դրոշը բարձր բռնեց և առաջ տարավ նրա հավատարիմ աշակերտ, նրա արժանավոր հաջորդ և նրա գործի մեծ շարունակող ընկեր Ստալինը։

Լենինի մահվան օրից անցած 26 տարիները լենինյան պատգամների անշեղ կենսագործման համար բոլշևիկների պարտիայի և սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի ու պայքարի տարիներ են։ Այդ տարիներին սովետական հերոս ժողովուրդը, կոմունիստական պարտիայի ղեկավա-



րությամբ, հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ մեր երկիրը ագրարային, հետամնաց երկրից վերածեց սոցիալիստական հզոր տերության, կառուցեց անդասակարգ սոցիալիստական հասարակություն, որն այժմ հաջողությամբ ընթանում է դեպի կոմունիզմ։

***

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը հանդիսանում է Վ. Ի. Լենինի անմահ գաղափարների մարմնացումը։ Գծելով նոր հասարակության կառուցման ուղիները Լենինը ուսուցանում էր, որ սոցիալիզմի հաղթանակի համար պահանջվում են ոչ միայն որոշակի քաղաքական կարգեր, այլև բարձր զարգացած տնտեսական բազա։ «Աշխատանքի արտադրողականության վերելքը,— ասում էր Լենինը,— ամենից առաջ պահանջում է ապահովել խոշոր ինդուստրիայի նյութական հիմքը— զարգացնել վառելանյութի, երկաթի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության արտադրությունը»։

1924 թվականի հունվարի 26-ին Սովետների Համամիութենական երկրորդ համագումարում ընկեր Ստալինը տվեց իր պատ-

մական երդումը.— բարձր պահել և մաքուր
պահպանել պարտիայի անդամի մեծ կոչու-
մը, աչքի լույսի պես պահպանել նրա միաս-
նությունը, պահպանել ու ամրապնդել պրո-
լետարիատի դիկտատուրան, բոլոր ուժերով
ամրապնդել բանվորների ու գյուղացիների
դաշինքը, ամրապնդել ու ընդլայնել ռես-
պուբլիկաների միությունը, հավատարիմ
մնալ Կոմունիստական Ինտերնացիոնալի
սկզբունքներին։ Ընկեր Ստալինի պատմա-
կան երդումը դարձավ բոլշևիկների պար-
տիայի, սովետական ամբողջ ժողովրդի աշ-
խատանքի ու պայքարի մարտական ծրա-
գիրը։

Ընկեր Ստալինը լենինիզմի թշնամիների դեմ մղած պայքարում պաշտպանեց և զարգացրեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան թեորիան և գլխավորեց սոցիալիստական շինարարությունը ՍՍՌՄ-ում։

Ստալինյան հնգամյակների իրագործման շնորհիվ արմատապես փոխվեց մեր երկրի դեմքը։ Ստեղծվեցին արդյունաբերության տասնյակ նոր ճյուղեր։ Արդյունաբերության արտադրանքի ծավալով մեր երկիրը գրավեց առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը աշխարհում։ Պատերազմի նախօրյակին,



1940 թվին, մեր արդյունաբերությունն ամբողջովին վերցրած 12 անգամ ավելի արտադրանք տվեց, քան 1913 թվին, իսկ արտադրության միջոցների արտադրությունը աճեց 20 անգամ։ Բանվորների և ծառայողների թիվը 1913 թվականի 11,4 միլիոնից 1940 թվականին հասավ մինչև 30,4 միլիոնի։ Մեր երկիրը ագրարայինից դարձավ ինդուստրիալ, մանր գյուղացիականից ամենախոշոր, առաջավոր սոցիալիստական գյուղատնտեսության երկիր։ Մեր երկրում կատարվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան-ստալինյան քաղաքականությունն ապահովեց ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը։ Լիկվիդացիայի ենթարկվեցին շահագործող դասակարգերը, անհետացան գործազրկությունն ու աղքատությունը, բարելավվեց ժողովրդի նյութական բարեկեցությունը, ընդմիշտ ոչնչացվեց մարդու շահագործումը մարդու կողմից։

Ստալինյան բարեկամությամբ զոդված Սովետական Միության եղբայրական մեծ ընտանիքում ծաղկում ու բարգավաճում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաները։ Պարտիայի, Սովետական կառավարու-

թյան հոգատարությամբ և ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ նախկին ճնշված ազգերը լիկվիդացրին իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, ստալինյան հնգամյակների կենսագործման շնորհիվ դարձան առաջավոր ինդուստրիայի և կոլխոզային զարգացած գյուղատնտեսության երկրներ իրենց ծաղկած ազգային կուլտուրայով։

Հայաստանը ազգային վերածննդի հնարավորություն ստացավ միայն սովետական իշխանության շնորհիվ։ Սովետական կառավարության և անձամբ Մեծ Ստալինի ամենօրյա հոգատարության շնորհիվ Հայկական Սովետական Ռեսպուբլիկան դարձավ Սովետական Միության ծաղկուն ռեսպուբլիկաներից մեկը, բարձր զարգացած արդյունաբերությամբ, սոցիալիստական գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ ու կուլտուրայով։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունն ապահովեց մեր երկրի բոլոր ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը։ Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը, սովետա-



կան հայրենասիրությունը դարձան մեր հասարակության հզոր շարժիչ ուժերը։

Սովետական ժողովուրդը բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ է եղել ընկեր Ստալինի առաջադրած հետպատերազմյան հնգամյա պլանի կատարման և գերակատարման գործին, ՍՍՌՄ-ի էկոնոմիկան անշեղորեն նոր, հզոր վերելք է ապրում։ Հետպատերազմյան հնգամյակի անցած ժամանակաշրջանում սովետական արդյունաբերության համախառն արտադրանքը տարեկան ավելացել է 20 և ավելի տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը 1948 թվին նախապատերազմյան 1940 թվի արտադրության ծավալից գերազանցեց ավելի քան 40 տոկոսով, իսկ արտադրության մակարդակը 1949 թվի 4-րդ եռամսյակում նախապատերազմյանից գերազանցեց ավելի քան 50 տոկոսով։

Արդյունաբերության հետ միասին անշեղ վերելք է ապրում նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Բավական է նշել, որ մեր երկրում գյուղատնտեսությունը 1949 թվին տվեց ավելի շատ հաց, քան նախապատերազմյան 1940 թվին։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ սո-

ցիալիզմից կոմունիզմին անցնելու համար նախ պետք է ստեղծել կոմունիզմի նյութական բազան: Այդ բազան մեր ժողովրդական տնտեսության մեջ ստեղծվել է և գնալով հզորանում է տեխնիկական անընդհատ առաջադիմության, աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ: ՍՍՌՄ-ում տեխնիկական հզոր առաջադիմության և գիտության զարգացման արտահայտություններից մեկն է համդիսանում կարճ ժամանակամիջոցում ատոմային էներգիայի գաղտնիքին տիրապետելը և այն կոմունիզմի կառուցման գործին ի սպաս դնելը: Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ մեր երկրում հաջողությամբ հաղթահարվում է քաղաքի և գյուղի միջև, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած հակադրությունը, հաղթահարվում են բանվորների և կոլխոզնիկ գյուղացիների միջև եղած դասակարգային տարբերությունները, հաջողությամբ կատարվում է ընկեր Ստալինի ցուցումը՝ բոլոր բանվորներին և գյուղացիներին դարձնել կուլտուրական և զարգացած մարդ: Մեր երկրում միլիոնավոր աշխատավորներ, մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, ձգտում են Հայրենիքին ի սպաս



դնել արտադրության առաջավոր ռեկորդներ, պայքարում են ձեռնարկությունների հիմնական և շրջանառու միջոցների լավագույն օգտագործման համար, արտադրանքի որակը բարձրացնելու և ինքնարժեքը իջեցնելու, խնայողության խիստ ռեժիմի և արտադրության բարձր կուլտուրայի համար: Հնգամյա պլանի հաջող կատարման հիման վրա անընդհատ աճում է աշխատավորության նյութական բարեկեցությունը:

ՍՍՌՄ-ում հաղթական սոցիալիստական շինարարության «գլխավոր հանրագումարն այն է,—նշում է ընկեր Ստալինը,— որ մեր երկրի բանվոր դասակարգը, ոչնչացնելով մարդու շահագործումը մարդու կողմից և հաստատելով սոցիալիստական հասարակարգ, ամբողջ աշխարհին ապացուցեց իր գործի արդարությունը: Այդ է գլխավոր հանրագումարը, որովհետև նա ամրապնդում է հավատը դեպի բանվոր դասակարգի ուժերը և դեպի նրա վերջնական հաղթանակի անխուսափելիությունը»:

Իր պատմական մեծ սխրագործությամբ սովետական ժողովուրդը մի ամբողջ դարաշրջանով առաջ անցավ աշխարհի բոլոր ժողովուրդներից և գործնականորեն միլիոնավոր մարդկանց ցույց տվեց կապիտալիս-





տական ստրկությունից դուրս գալու միակ ճիշտ ուղին։ Սովետական Միությունը հանդիսացավ այն երկիրը, որը մարդկության համար հարթեց դեպի կոմունիզմ տանող ուղին։ Մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում ձեռք բերված համաշխարհային պատմական նշանակություն ունեցող նվաճումները ցույց տվեցին, որ սոցիալիզմի հաղթանակի համար անհրաժեշտ նախադըրյալները արդեն վաղուց հասունացել են Եվրոպայի մյուս երկրներում։ Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները վստահ կերպով ընթանում են սոցիալիզմի ճանապարհով։ Կատարելով ժողովրդական տնտեսության զարգացման պլանները, այդ երկրները ձեռք են բերել զգալի հաջողություններ արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրական շինարարության ասպարեզում։ Միայն 1949 թվին Ռումինիայի արդյունաբերական արտադրությունը ավելացավ ավելի քան 40 տոկոսով, իսկ բանվորների միջին աշխատավարձը բարձրացավ 30 տոկոսով։ Լեհաստանում բնակչության յուրաքանչյուր հոգուն ընկնող արդյունաբերական արտադրանքը այժմ 2,5 անգամ ավելի է, քան պատերազմից առաջ, իսկ բանվորների աշխա-



տավարձը բարձրացել է 26,6 տոկոսով։ Նույնանման հաջողություններ են ձեռք բերվել նաև ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում։

Միանգամայն հակառակ պատկեր գոյություն ունի ԱՄՆ-ում և կապիտալիստական մյուս երկրներում։ ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրանքը 1949 թվականի հուլիսին պատերազմի տարիների համեմատությամբ իջել է 65 տոկոսով, իսկ 1948 թվի հոկտեմբերից հետո կրճատվել է 22 տոկոսով։ Նման դրություն գոյություն ունի նաև Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և կապիտալիստական մնացած երկրներում։ Ամենուրեք աճում է գործազրկությունը և ժողովրդական մասսաների աղքատությունը։ Կապիտալիստական երկրներում գործազուրկների և կիսագործազուրկների թիվը հասնում է 40 միլիոն մարդու։



Որքան ավելի ենք հեռանում մենք Լենինի մահվան օրից, այնքան ավելի խորն ենք ըմբռնում լենինիզմի միջազգային հսկայական նշանակությունը, լենինիզմի գաղափարական զենքի ամենահաղթ ուժի նշանակությունը։

Լենինի հավատարիմ զինակից, նրա ուսմունքի շարունակող և զարգացնող ընկեր Ստալինը Սովետների երկրորդ համագումարում արտասանած իր ճառում ցույց տալով մեծ Լենինի վեհությունը, ասաց.

«Լենինի վեհությունն ամենից առաջ հենց այն է, որ նա, ստեղծելով Սովետների Ռեսպուբլիկան, հենց դրանով, ամբողջ աշխարհի ճնշված մասսաներին իրականում ցույց տվեց, որ կորցրած չէ փրկության հույսը, որ կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը հավիտենական չէ, որ աշխատանքի թագավորությունը կարելի է ստեղծել հենց աշխատավորների ջանքերով, որ աշխատանքի թագավորությունը պետք է ստեղծել երկրի վրա, և ոչ թե երկնքում։ Դրանով նա ամբողջ աշխարհի բանվորների ու գյուղացիների սրտերը վառեց ազատության հույսով։ Դրանով է հենց բացատրվում այն փաստը, որ Լենինի անունը դարձել է աշխատավոր ու շահագործվող մասսաների ամենասիրելի անունը»։

Լենինիզմը հզոր լուսարձակի պես լուսավորում է ճնշված ու կեղեքված ժողովուրդների ազատագրական պայքարի ուղին, նրանց հաղթանակի հույս և հավատ է ներ-



շնչում իմպերիալիզմի դեմ իրենց մղած պայքարում։

Ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի համար հսկայական նշանակություն ունեցավ և ունի իմպերիալիզմի լենինյան հանճարեղ վերլուծությունը։ Լենինը ցույց տվեց, որ իմպերիալիզմը կապիտալիզմի բարձրագույն ստադիան է, որ իմպերիալիզմի դարաշրջանում սրվում են կապիտալիզմին հատուկ անհաշտելի բոլոր հակասությունները, որ իմպերիալիզմը փտող և մեռնող կապիտալիզմն է, որ իմպերիալիզմը աշխատավորներին բերում է պատերազմներ, գործազրկություն, աղքատություն և թշվառություն։

Իմպերիալիզմի խոր վերլուծության հիման վրա Լենինը եկավ այն եզրակացության, որ հնարավոր է իմպերիալիստական ճակատի ճեղքումը մեկ կամ մի քանի տեղերում, որ հնարավոր է սոցիալիզմի հաղթանակը մի քանի և նույնիսկ առանձին վերցրած մեկ երկրում։ Այդ՝ սոցիալիստական ռևոլյուցիայի մի նոր, ամբողջական թեորիա էր, որ մշակեց Լենինը։

Կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիության մասին լենինյան-ստալինյան թեորիական դրույթ-

ների ամբողջ ճշմարտությունը հաստատվեց պատմության հետագա ընթացքով։ Լենինիզմի գաղափարները մարմնավորված են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի հաղթանակի մեջ, մեր երկրում ամենաառաջավոր հասարակական և պետական կարգերի հաստատման մեջ, հաղթանակած սոցիալիզմի մեջ։ Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնող մեր երկիրը ոգեշնչող օրինակ է հանդիսանում ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդների համար։ Նրանք Սովետական Միության հաջողությունների մեջ տեսնում են իրենց սեփական մոտալուտ ազատագրումը կապիտալիզմի դաժան ճնշումից և սարկացումից։

Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի գաղափարները հաղթանակ հաղթանակի ետևից են տանում. նրանք մարմնավորվում են կյանքում, իսկ իմպերիալիզմի և ֆաշիզմի ռեակցիոն քաղաքականությունը, կոսմոպոլիտական-նացիոնալիստական նողկալի իդեոլոգիան պարտություն պարտության հետևից է կրում։

Երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ սովետական ժողովրդի տարած համաշխարհային պատմա-



կան հաղթանակը հանգեցրեց կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների անջատմանը կապիտալիզմի սիստեմից։ Լենինիզմի գաղափարների նշանակալից հաղթանակ է հանդիսանում այն փաստը, որ Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի կոմունիստական և բանվորական պարտիաները, ղեկավարվելով Լենինի և Ստալինի ուսմունքով, իրենց երկրների աշխատավորներին ոտքի հանեցին իմպերիալիզմի դեմ, ջախջախեցին ռեակցիոն ռեժիմները, հաստատեցին ժողովրդական դեմոկրատիայի կարգեր, իրականացրին սոցիալիստական վերափոխություններ հօգուտ ժողովրդի։ Այդ երկրների աշխատավորները կանգնելով սոցիալիզմի ուղու վրա, իրենց կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ հաստատուն քայլերով ընթանում են դեպի սոցիալիզմ։ Մեր երկրի պատմական հարուստ փորձի ընդօրինակումը, Սովետական Միության կողմից ցույց տրվող ամենօրյա անշահախնդիր հսկայական օգնությունը, սովետական ժողովրդի հետ բարեկամական կապերի զարգացումը և ամրապնդումը, Լենինի-Ստալինի գաղափարների անշեղ կենսագործումը վճռական պայման

են ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի կառուցման հաղթանակի համար։

Լենինիզմի գաղափարների կենսական հզոր ուժը իր խոր արտահայտությունը գտավ չին՝ մեծ ժողովրդի պատմական հաղթանակի մեջ, ժողովուրդ, որ իր կոմունիստական հերոսական պարտիայի ղեկավարությամբ, իր առաջնորդ Մաո Ցզե-դունի գլխավորությամբ տապալեց ֆեոդալական ռեակցիայի դարավոր բեռը, իմպերիալիզմի օտարերկյա լուծը և կանգնեց նոր կյանքի կառուցման ճանապարհին։

Ցույց տալով լենինյան-ստալինյան գաղափարների ամենահաղթ ուժի հսկայական նշանակությունը, ընկեր Ստալինի ծննդյան 70-ամյակի առթիվ ընկեր Միկոյանը «Կոմունիզմի մեծ ճարտարապետը» հոդվածում գրում է.

«Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, Հյուսիսային Կորեայում և Չինաստանում սոցիալիստական բարեփոխությունների ստրատեգիան և տակտիկան, ինչպես նաև կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաների ստրատեգիան և տակտիկան ամբողջովին հիմնվում են



դասակարգային պայքարի լենինյան-ստալինյան գիտության վրա։ Միայն խիստ գիտական, լենինյան-ստալինյան գաղափարական-թեորիական հիմքի վրա կարելի էր մի շարք երկրներում ապահովել հին հակաժողովրդական ռեժիմների այնքան արագ վերացումը, իրագործել բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքը։ Միայն ռևոլյուցիոն զգոնության վերաբերյալ լենինյան-ստալինյան ուսմունքը ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաներին օգնեց ժամանակին գուշակել դեմոկրատիայի կատաղի թշնամիների և նրանց անգլո-ամերիկյան տերերի քայքայիչ գործունեությունը, մերկացնել ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների ամենաոխերիմ թշնամիներին՝ Տիտո-Ռանկովիչի լրտեսական-դիվերսիոն կլիկին և ժամանակին անվնաս դարձնել անարգ ռայկերին ու կոստովներին»։

Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի համար խոշոր հաղթանակ է հանդիսանում գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմվելը։ Ընկեր Ստալինի այն խոսքերը, որ «Գերմանական դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլի-

կայի կազմվելը շրջադարձային կետ է հանդիսանում Եվրոպայի պատմության մեջ, ցնցեց ամբողջ աշխարհը։

Լենինիզմի գաղափարների կենսական մեծ ուժը իր վառ արտահայտությունն է գտնում կոմունիստական շարժման աճման և ամրապնդման մեջ, բանվոր դասակարգի խակական առաջնորդների, անկոտրում կոմունիստ մարտիկների կադրեր դաստիարակելու, աճեցնելու, կռելու և կոփելու մեջ։ Եթե 20—25 տարի առաջ արտասահմանի կոմունիստական պարտիաների մեջ կար 500 հազար մարդ, ապա ներկայումս արտասահմանյան կոմունիստական և միավորված բանվորական պարտիաները իրենց շարքերում ունեն ավելի քան 18 միլիոն մարդ, որոնք գլխավորում են աշխատավորների պայքարը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։

Իմպերիալիզմի և նոր պատերազմի հրրձիգների դեմ մղվող պայքարում հսկայական նշանակություն ունի 1949 թվի երկրորդ կեսին Հունգարիայում տեղի ունեցած կոմունիստական պարտիաների Ինֆորմացիոն բյուրոյի խորհրդակցության որոշումները, որոշումներ, որոնք հիմնված են լենինյանստալինյան ստրատեգիայի և տակտիկայի



գիտության վրա։ Այդ որոշումներով զինված արտասահմանի կոմունիստական և բանվորական պարտիաները պայքարում են բանվոր դասակարգի միասնության համար, պատերազմի հրձիգների պլանները քայքայելու համար, մերկացնում են աջ սոցիալիստական պարտիաների պարագլուխներին՝ անգլո-ամերիկյան իմպերիալիզմի այդ գործակիցների, սոցիալիզմի այդ ոխերիմ թշնամիների ռեակցիոն գործունեությունը, մասսաներին ոտքի են հանում իմպերիալիզմի դեմ՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

Եթե դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը գնալով աճում, ամրապնդվում և հաղթանակում են, ապա իմպերիալիզմի ուժերը գնալով թուլանում են, նրա հիմքերը ավելի ու ավելի են խարխլվում և պարտություններ կրում։ Իմպերիալիստները սրվող հակասություններից դուրս գալու ելք են որոնում տենդագին նոր պատերազմ նախապատրաստելու և իրագործելու մեջ։ ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն շրջանները ձգտում են զինված ուժով իրագործել համաշխարհային տիրապետություն ստեղծելու իրենց խելացնոր պլանները։

Խաղաղության, դեմոկրատիայի և սո-

ցիալիզմի լագերի գլուխն է կանգնած Սովետական հզոր Միությունը՝ ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և խաղաղության դրոշակակիրը։ Սովետական Միության գլխավորությամբ պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարում ստեղծված է խաղաղության կողմնակիցների կազմակերպված հզոր ճակատ, որն իր շարքերում միավորում է խաղաղության համար մարտնչող 600 միլիոն մարտիկներ։

Ստալինյան խաղաղասեր քաղաքականությունը պաշտպանում են Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որոնք Սովետական Միության հետ միասին ունեն 800 միլիոն մարդ։ Բացի այդ, կապիտալիստական երկրներում և նրանց գաղութներում կան հարյուր միլիոնավոր աշխատավորներ, որոնք պայքարում են ազատության, խաղաղության և դեմոկրատիայի համար։

* * *

Սովետական բազմազգ ժողովուրդները, բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարության մեջ են տեսնում իրենց հզորության հիմքերը և ծաղկումը, իրենց անպարտելիությունը և փառքը։ Մեր լայնածավալ երկրում չկա տնտեսական, կուլ-



տուրական շինարարության ոչ մի բնագավառ, սովետական հասարակության տնտեսական և քաղաքական կյանքում փոփոխություն առաջ բերած ոչ մի նախաձեռնություն, որ կապված չլինի մեծ Ստալինի անվան հետ։ Նրա անվան հետ է կապված կոմունիզմի հոյակապ շենքի կառուցման հերոսական պատմությունը մեր երկրում։

«Մեծ Լենինի մահից հետո,— ասում է ընկ. Լ. Պ. Բերիան,— աշխարհում չի եղել և չկա մի անուն, որն այնպես հարազատ լինի միլիոնավոր աշխատավորների սրտերին, ինչպես մեծ առաջնորդ ընկեր Ստալինի անունը... Ընկեր Ստալինի անունը ջերմ սիրով են արտասանում աշխարհի բոլոր երկրների աշխատավորները, այդ անվան հետ կապելով իրենց դարավոր հույսերի և իղձերի իրականացումը»։

Այնուհետև ընկ. Բերիան ասում է. «Լենինի բոլոր ժամանակակիցներից ոչ ոք չկարողացավ Ստալինի պես լրիվ հասկանալ և գնահատել Լենինի մեծությունը, նրա, որպես նոր տիպի պրոլետարական պարտիայի ստեղծողի պատմական դերը»։

Ընկեր Ստալինը իր ռևոլյուցիոն գործունեության առաջին իսկ օրերից որպես կայուն լենինյան, առանց տատանվելու կանգնեց

Լենինի դրոշի տակ, դարձավ նրա զինակիցն ու մարտական ընկերը։

Հետևողականորեն շարունակելով Լենինի մեծ գործը, ընկեր Ստալինը համախմբեց բոլշևիկյան պարտիան, կոփեց նրա շարքերի միասնությունը և տարավ նրան լենինիզմի անշեղ ուղիով։ Ընկեր Ստալինը ոչ միայն թշնամիների դեմ մղած վճռական պայքարում պաշտպանեց լենինյան թեորիան մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին, այլև զարգացրեց ու հարըստացրեց այդ թեորիան նոր դրույթներով և գործնականում գլխավորեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման վիթխարի աշխատանքները, ապահովեց սոցիալիզմի հաղթանակը Սովետական Միությունում։

Ընկեր Ստալինը զարգացրեց Լենինի ուսմունքը պարտիայի մասին, բացահայտեց բոլշևիկների պարտիայի, որպես նոր տիպի պարտիայի բոլոր առանձնահատկությունների ամենախոր և ծավալուն բնութագրությունը, նրա դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում և սոցիալիզմի կառուցման պայմաններում։

Ընկեր Ստալինը հանճարեղ կերպով մշակեց մեր երկրի ինդուստրացման պլանը, որի ճշգրիտ իրականացման բազայի վրա լուծվեց



մեր երկրի մանրատված գյուղացիական տընտեսությունների կոլեկտիվացման պատմական խնդիրը։ Ընկեր Ստալինի ղեկավարությամբ Սովետական Միությունը դարձավ հզոր ինդուստրիալ և կոլխոզային սոցիալիստական մեծ տերություն, որն ընդունակ հանդիսացավ ջախջախելու գերմանական ֆաշիզմը և ճապոնական իմպերիալիզմը։

Ընկեր Ստալինը պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում ցույց տվեց և հիմնավորեց սոցիալիստական պետության ամրապնդման անհրաժեշտությունը։ Նա ստեղծեց ավարտված ուսմունք սոցիալիստական պետության մասին։ Պետության հարցում տեսականորեն հիմնավորեց ու զարգացրեց լենինյան դրույթները։

Ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ Սովետական Միությունում իրականացվեց իսկական կուլտուրական ռևոլուցիա, երկիրը ծածկվեց դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների և գիտության օջախների խիտ ցանցով։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր երկրում լուծվեց ռևոլուցիայի կարևորագույն հարցերից մեկը՝ ազգային հարցը։ Միասնական միութենական պետության մեջ սովետա-

կան բազմազգ ժողովուրդների կամավոր միավորման պատմական հիմքի վրա աճեց ու ամրապնդվեց մեր ժողովուրդների ստալինյան բարեկամությունը՝ հասարակության շարժիչ ուժը։

Սոցիալիզմի կառուցման հաղթանակը օրենսդրականորեն ամրապնդվեց ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիայում, որպես պրոլետարական ռևոլյուցիայի անցած ուղու և նվաճումների արդյունք։ Ահա թե ինչու մեր ժողովուրդը ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան իրավամբ անվանում է նրա կերտողի անունով—Ստալինյան Կոնստիտուցիա։

Հենվելով սոցիալիստական ռևոլյուցիայի հարուստ փորձի վրա, զարգացնելով մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան թեորիան, ընկեր Ստալինը հանգեց այն հանճարեղ հետևությանը, որ հնարավոր է կոմունիզմ կառուցել նույնիսկ կապիտալիզմի շրջապատման առկայության պայմաններում։ Մեր երկրում սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու մասին ընկեր Ստալինի գիտական այդ հանճարեղ հետևությունը բոլշևիկների պարտիային զինեց ապագայի փայլուն հեռանկարներով։

Հայրենական Մեծ պատերազմը մեր Հայ-



րենիքի հզորության ու անսասանության փորձաքարը հանդիսացավ։ Պատերազմի տարիներին բոլշևիկյան պարտիան երկրի պաշտպանության կազմակերպման ամբողջ դժվարին աշխատանքները դրեց ընկեր Ստալինի վրա։ Ընկեր Ստալինը մշակեց և կենսագործեց թշնամու ջախջախման ստրատեգիական հանճարեղ պլանը։

Մեր ձեռք բերած համաշխարհային պատմական մեծագույն հաղթանակների համար մենք պարտական ենք բոլշևիկների հերոսական պարտիային, Լենինի և Ստալինի հանճարեղ ղեկավարությանը։ Բոլշևիկների մեծ պարտիան 26 տարի առանց Լենինի, լենինյան ուղիով, Լենինի մեծ գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր երկիրը հասցրեց սոցիալիզմի հաղթանակին, կազմակերպեց սովետական ժողովրդի հաղթանակը գերմանական ֆաշիզմի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ։

Հաղթականորեն ավարտելով պատերազմը, բոլշևիկների պարտիան, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, սովետական ժողովրդին մոբիլիզացրեց հետպատերազմյան նոր հնգամյա պլանը կենսագործելու համար, ապրանքների և մթերքների առատություն ստեղծելու

համար, մեր երկրում կոմունիզմ կառուցելու համար։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ այժմ սովետական ժողովուրդը բարձր խանդավառությամբ նախապատրաստվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1950 թվի մարտի 12-ին տեղի ունենալիք ընտրություններին։ Սովետական մարդիկ այդ ընտրությունները արդեն իսկ նշանավորում են նորանոր հաջողություններով։

Բոլշևիկների փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, Լենինի դրոշի ներքո, մեծ Ստալինի գլխավորությամբ սովետական ժողովուրդը հաստատուն քայլերով առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

## ԿԵՆՍԱԳՈՐԾՎՈՒՄ ԵՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԻՄԱՍՏՈՒՆ ՊԱՏԳԱՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

26 տարի է անցել այն օրվանից, ինչ դադարեց բաբախել բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության հիմնադիր, ամբողջ աշխատավոր մարդկության հանճարեղ առաջնորդ մեծ Լենինի սիրտը։ Լենինի մահից հետո նրա մերձավորագույն զինակից ու հավատարիմ աշակերտ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը սովետական ժողովրդին անշեղորեն առաջնորդում է լենինյան ուղիով, կենսագործելով անմահ Իլյիչի վեհ գաղափարներն ու պատգամները։ Մարդկության լավագույն ապագայի՝ կոմունիզմի կառուցման լենինյան հոյակապ նախագծումները, մեծ Ստալինի ղեկավարությամբ օրեց-օր իրականություն են դառնում։

Դեռևս 30 տարի առաջ մեծ Լենինը ՌԿԵՄ 3-րդ համագումարում արտասանած պատմական ճառում ասաց.

«Մենք գիտենք, որ կոմունիստական հա-

սարակություն չի կարելի կառուցել առանց
արդյունաբերությունն ու հողագործությունը
վերածնելու, ընդ որում դրանք պետք է վե-
րածնել ոչ հին ձևերով: Պետք է դրանք վե-
րածնել գիտության վերջին խոսքի համա-
ձայն կառուցված ժամանակակից հիմքի
վրա: Դուք գիտեք, որ այդ հիմքը էլեկտրա-
կանությունն է, որ երբ ողջ երկիրը, արդյու-
նաբերության ու հողագործության բոլոր
ճյուղերը կենթարկվեն էլեկտրիֆիկացման,
երբ դուք այդ խնդիրը կյուրացնեք, այն ժա-
մանակ միայն դուք կարող եք ստեղծել այն
կոմունիստական հասարակությունը, որը հին
սերունդը չի կարող կառուցել»:

Լենինը ուսուցանում էր նաև, որ
«Սոցիալիզմը, այդ սովետական իշխանու-
թյունն է՝ պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆի-
կացիան»:

Մեծ Լենինի այս իմաստուն խոսքերն սա-
վել են մեր երեք տասնամյակ առաջ. սովե-
տական իշխանության առաջին տարիներին:
խոշոր մեքենայական արդյունաբերություն
ստեղծելու, մեր երկրի ընդերքի անսպառ
հարստությունները օգտագործելու և դրանք
ժողովրդի սեփականությունը դարձնելու հա-
մար հանճարեղ առաջնորդը բացառիկ նշա-



նակություն էր տալիս երկրի էլեկտրիֆիկա-
ցիայի գործին:

Էլեկտրականությամբ պետք է լուսավորվի
Ռուսաստանի յուրաքանչյուր խրճիթ: Այս էր
երազում Իլյիչը: Նրա հանճարեղ ցուցումնե-
րով 1920 թվին ընդունվեց ԳՈԷԼՌՈ-ի (Ռու-
սաստանի պետական էլեկտրիֆիկացման) նշ-
շանավոր պլանը: 10—15 տարվա ընթացքում
կառուցել էլեկտրակայաններ՝ 1,5 միլիոն կի-
լովատ կարողությամբ— այն տարիների հա-
մար այսպիսի հանդուգն նպատակ էր դնում
ԳՈԷԼՌՈ-ի լենինյան պլանը:

Իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի ղե-
կավարությամբ սովետական ժողովուրդը
զարգացման վիթխարի թռիչք կատարեց: Ար-
դեն 1935 թվականին, այսինքն 15 տարվա
ընթացքում, այդ պլանը գերակատարվեց 2,5
անգամ: 1938 թվին ՍՍՌՄ էլեկտրակայան-
ները 1913 թվի համեմատությամբ տալիս էին
20,4 անգամ, իսկ 1940 թվին՝ 25 անգամ ա-
վելի էլեկտրաէներգիա: Միայն Դնեպրի հիդ-
րոկայանը երկրորդ հնգամյակի վերջում ա-
վելի շատ էլեկտրաէներգիա էր արտադրում,
քան ցարական Ռուսաստանի բոլոր էլեկ-
տրակայանները: Էլեկտրաէներգիայի ար-
տադրության տեսակետից 1937 թվին արդեն

*ՍՍՌՄ-ն 15-րդ տեղից անցավ աշխարհում երրորդ տեղը։*

*Ցարական Ռուսաստանում կային ընդամենը 80 գյուղական էլեկտրակայաններ։ Էլեկտրականության հրացոլքը այսօր փայլատակում է կոլխոզային հազարավոր գյուղերի վրա։ Բավական է ասել, որ հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջին երկու տարիների ընթացքում գյուղական էլեկտրակայանների հզորությունը կրկնապատկվեց։ Միայն 1948 թվին շարք մտան 3.250 գյուղական էլեկտրակայաններ։ 1949 թվի ընթացքում էլեկտրիֆիկացվել է գրեթե 10 անգամ ավելի կոլխոզ, քան նախապատերազմյան 1940 թվականին։*

*Էլեկտրականությունը խորը կերպով թափանցում է կոլխոզային գյուղի բոլոր բնագավառները՝ հեշտացնելով ու ավելի հրապուրիչ դարձնելով երկրագործի աշխատանքը։ Էլեկտրական էներգիան այսօր վարում է կոլխոզային դաշտերը, հնձում, կալսում և աղում հացահատիկը, աշխատեցնում արհեստանոցների մեքենաները, կթում, խուզում անասուններին։*



*1923 թվին գրած «Կոոպերացիայի մասին» հոդվածում Լենինը ցուցում տվեց.*



«Մեզանում, իրոք, քանի որ պետական իշխանությունը բանվոր դասակարգի ձեռքումն է, քանի որ այս պետական իշխանությանն են պատկանում արտադրության բոլոր միջոցները, մեզանում, իրոք, միակ խնդիր է մնացել բնակչության կոոպերացումը: Բնակչության մաքսիմալ կոոպերացման դեպքում ինքնըստինքյան նպատակին է հասնում... սոցիալիզմը...»։

*Լենինյան նշանավոր կոոպերատիվ պլանը նախատեսում էր կոոպերացիայի մեջ ընդգրկել ոչ միայն սպառման բնագավառը, այլև ամբողջ գյուղատնտեսությունը։ Իրականացնելով Լենինի իմաստուն ցուցումները, բոլշևիկյան պարտիան մեծ Ստալինի ղեկավարությամբ սոցիալիստական ծավալուն շինարարության մեջ ներգրավեց երկրի գյուղացիական մասսաներին, գյուղատնտեսության մեջ աստիճանաբար արմատավորեց կոլեկտիվիզմի հիմունքները, դարերով կալվածատերերի ծանր լծի տակ տառապած միլիոնավոր գյուղացիական տնտեսություններ միավորեց խոշոր, մեքենայացված սոցիալիստական տնտեսությունների մեջ, դուրս բերելով նրանց ազատ ու երջանիկ կյանքի ճանապարհը։*

*Դրա հետ միասին գյուղատնտեսության*

մեջ, կատարելագործված տեխնիկայի կիրառման հիմքի վրա, կատարվեց լիակատար տեխնիկական հեղաշրջում։ Ջնջվում են քաղաքի և գյուղի հակադրության սահմանները։ Վերափոխվել է նաև ինքը, գյուղացիությունը, դառնալով պատմության մեջ դեռ չտեսնված նոր, կոլխոզային գյուղացիություն։

Արդեն երկրորդ հնգամյակի վերջում, այսինքն 1937 թվին կոլխոզներում միավորվել էին ՍՍՌՄ գյուղացիական բոլոր տնտեսությունների 93 տոկոսը։ Կոլխոզների հացահատիկային ցանքերի տարածությունները կազմում էին բոլոր հացահատիկային ցանքատարածությունների 99 տոկոսը։ Ներկայումս ՍՍՌՄ-ում կան 246.000 կոլխոզներ։

Երկրորդ հնգամյակի վերջում ՍՍՌՄ-ն գրավեց աշխարհում առաջին տեղը՝ բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների և բերքատվության գծով։ 1940 թվին հացահատիկի համախառն բերքը ՍՍՌՄ-ում կազմեց 7,3 միլիարդ փութ։ 1949 թվին արդեն այդ մակարդակը գերազանցվեց։ Տասնյակ հազարավոր կոլխոզներ դարձել են միլիոնատեր։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման գործում մեծ դեր խաղացին սով-



խոզները, որոնք սովետական գյուղացիությանը ապացուցեցին խոշոր սոցիալիստական մեքենայացված հողագործության առավելությունները։

«Տարակույս չկա,— ասում է ընկեր Ստալինը,— որ առանց կոլեկտիվացման քաղաքականության մենք չէինք կարողանա այդպիսի կարճ ժամկետում վերջ դնել մեր գյուղատնտեսության դարավոր հետամնացությանը»։

***

1919 թվին, պարտիայի 8-րդ համագումարում Վլադիմիր Իլյիչն ասաց.

«Եթե մենք կարողանայինք վաղը տալ 100.000 առաջնակարգ տրակտորներ, դրանք մատակարարել բենզինով, դրանք ապահովել մեքենավարներով (դուք հիանալի գիտեք, որ դա առայժմ ֆանտազիա է), ապա միջակ գյուղացին կասեր. «Ես կոմունայի կողմն եմ» (այսինքն կոմունիզմի): Բայց դրա համար... հարկավոր է մեր արտադրողականությունն այնքան բարձրացնել, որ մենք ինքներս կարողանանք դրանք ստեղծել...»:

1919 թվին Լենինի ասած այս խոսքերը ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ այսօր պայծառ իրականություն են դարձել։

Արդեն երկրորդ հնգամյակի վերջում մեր գյուղատնտեսական մեքենաշինությունը դուրս եկավ աշխարհում առաջին տեղը։

Հայրենական պատերազմից առաջ կոլխոզային ու սովխոզային դաշտերում աշխատում էին ավելի քան 500.000 տրակտոր, ավելի քան 200.000 կոմբայն։ Միայն 1949 թվին գյուղատնտեսությունը ստացավ 150.000 տրակտոր, 29.000 կոմբայն, ավելի քան 1.600.000 կցվող գործիք և այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Այլ կերպ ասած, գյուղատնտեսությունը 3—4 անգամ ավելի տրակտոր ու գյուղատնտեսական մեքենաներ ստացավ, քան նախապատերազմյան 1940 թվին։



1919 թվին «Մեծ նախաձեռնություն» նշանավոր հոդվածում Վլադիմիր Իլյիչը գրում էր.

«Աշխատանքի արտադրողականությունը, այդ վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար»։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո պատմության մեջ առաջին ան-



գամ հասարակ մարդիկ հնարավորություն ստացան աշխատել ոչ թե ուրիշի, այլ իրենց համար։ Այդ հանգամանքը Լենինը համարում էր աշխատանքի արտադրողականության բարձրացման հզոր խթան։ Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվեց մեր մարդկանց վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Աշխատանքը ՍՍՌՄ-ում դարձավ պատվի, փառքի, արիության ու հերոսության գործ։ Մեր երկրում ստեղծված նոր տեխնիկայի հետ կապված առաջ եկան նոր մարդիկ, բանվորներ ու բանվորուհիներ, որոնք լիովին տիրապետելով իրենց գործի տեխնիկային, թամբեցին այն և առաջ մղեցին, ջարդելով հին նորմաները և տալով մինչ այդ չտեսնված բարձր արտադրողականության օրինակներ։

1913 թվի համեմատությամբ ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 4,3 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականության աճման տեմպով ՍՍՌՄ-ն անցավ կապիտալիստական բոլոր երկրներից։ Հայրենական պատերազմի երկու տարիների ընթացքում՝ 1942 թվի մայիսից մինչև 1944 թվի ապրիլ ամիսը, աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության

մեջ բարձրացավ միջին հաշվով ավելի քան 40 տոկոսով։

Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1949 թվի ինն ամիսների ընթացքում, 1948 թվի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 14 տոկոսով։



Դեռևս սովետական իշխանության առաջին իսկ օրերին Լենինը առանձնահատուկ կարևորություն էր տալիս մասսաների մեջ սոցիալիստական մրցության ծավալման խնդրին։ 1918 թվին «Ինչպես կազմակերպել մրցությունը» հոդվածում նա գրում էր.

«Սոցիալիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլ ընդհակառակը, առաջին անգամ հնարավորություն է ստեղծում իրոք լայնորեն, իրոք մասսայական չափով կիրառելու այն, աշխատավորների իսկապես մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են իրենց ցուցաբերել, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով»:



«Այժմ, երբ իշխանության գլուխ է կանգնած սոցիալիստական կառավարությունը, մեր խնդիրն է՝ կազմակերպել մրցությունը»:

Անցած ավելի քան 32 տարիներին մեր երկրում սոցիալիստական շինարարության ձեռք բերած վիթխարի նվաճումները հանդիսանում են սոցիալիստական ստեղծարար մրցության ծավալման վերաբերյալ լենինյան այս իմաստուն պատգամի իրականացման հոյակապ արդյունքը։ Ընկեր Ստալինը մրցությունը անվանել է «սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդը՝ աշխատավորների միլիոնավոր մասսաների առավելագույն ակտիվության հիմքի վրա»։ Ներկայումս մեր երկրի բանվորների ու ծառայողների 90 տոկոսից ավելին ընդգրկված է այդ ստեղծագործական շարժման մեջ։ Մրցության լայն ծավալման շնորհիվ ժողովրդա-տնտեսական բոլոր պլանները մեզ մոտ գերակատարվում են։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունը աննախընթաց թափ է ստացել։ Հազարավոր բանվորներ աշխատում են 1951—54 թվերի հաշվին, օրավուր հասնում արտադրական ավելի բարձր ցուցանիշների։

Ամբողջ երկրին հայտնի են սոցիալիստական մրցության այնպիսի առաջամարտիկներ, ինչպես Մոսկվայի «Սերպ ի մոլոտ» գործարանի երկրորդ մարտենյան ցեխի ձուլող Ժուրավլյովը, որը հասել է պողպատի ձուլման ամենաբարձր մակարդակին— 19,27 տոննայի, անվանի կոմբայնավար Ալեքսանդր Օսկինը, որը մրցելով կոմբայնավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Կոնստանդին Բորինի հետ, Կրասնոդարի երկրամասի Ստալինի անվան սովխոզի դաշտերում իր ընկեր Չերնենկոյի հետ միասին 27 աշխատանքային օրում հավաքեց 1.434 հեկտարի բերք և կալսեց 153.744 փութ հացահատիկ: Երևանի Ձերժինսկու անվան գործարանի ստախանովական ֆրեզերագործ Գրիգոր Սեմիրջյանը, Էլեկտրամեքենաշինական գործարանի երիտասարդ բանվոր Լենդրոշ Ղամբարյանը և շատ ուրիշներ վաղուց արդեն կատարել են իրենց հնգամյա առաջադրանքը և աշխատում են 1953—54 թվերի հաշվին:

Հայրենական մեծ պատերազմի ավարտումից հետո անցած ժամանակաշրջանում արդյունաբերության և գյուղատնտեսության 4.800 առաջավորներ ստացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, հարյուր հազարավոր բանվորներ ու կոլխոզնիկ-



ներ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով:

Սոցիալիստական մրցությունը դարձել է մեր կյանքի անխախտ օրենքը, կոմունիզմի կառուցման առաջմղիչ հզոր ուժը:

***

«Լավ է քիչ, բայց լավ» հոդվածում 1923 թվին Լենինն ասում էր.

«Մեր պետապարատի նորացման համար մենք պետք է, ինչպես էլ որ լինի, առաջադրենք մեզ մի խնդիր. առաջին—սովորել, երկրորդ—սովորել և երրորդ—սովորել ու այնուհետև ստուգել, որպեսզի մեզանում գիտությունը չմնա մեռած տառ կամ մոդայիկ ֆրազ... որպեսզի գիտությունն իրոք դառնա միս ու արյուն, կենցաղի բաղկացուցիչ տարր...»:

Սովորել, սովորել, սովորել՝ լենինյան այս նշանավոր լոզունգը դարձավ մեր ժողովրդի ամենանշանավոր և առօրյա լոզունգը սովետական իշխանության առաջին իսկ տարիներից: Մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդները, որոնք ռևոլյուցիայից առաջ խարխափում էին տգիտության ու խավարի մեջ, առաջին անգամ հնարավորություն ստացան լուսավորվելու Բոլշևիկյան պարտիայի և ի-

ժամատում Ստալինի ղեկավարությամբ մեր երկրում վերջ տրվեց անգրագիտությանը, իրականացվեց պարտադիր ուսուցման օրենքը։ 1939 թվին բնակչության մեջ գրագետների թիվը կազմում եր 90 տոկոս։

1914—15 ուսումնական տարում տարրական, 7-ամյա և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը կազմում էր 7,9 միլիոն հոգի։ Ներկայումս Սովետական Միությունում կա 220 հազարից ավելի դպրոց, իսկ նրանցում սովորողների թիվը մոտենում է 34 միլիոնի։ Սովետական երկրում կա 837 բարձրագույն ուսումնական հաստատություն, ավելի քան 3 հազար 500 տեխնիկում. ուսանողների թիվը երկու միլիոն մարդուց ավելի է։ 1914 թվի համեմատությամբ սովորողների թիվը 1938—39 ուսումնական տարում Հայաստանում աճել էր 10 անգամ, Թուրքմենիայում՝ 43, Ուզբեկստանում՝ 68, Տաջիկստանում՝ ավելի քան 660 անգամ և այլն։

Յուրաքանչյուր հազար բնակչին ընկնող տարրական ու միջնակարգ կրթություն ունեցողների թվով ՍՍՌՄ-ն անցել է բոլոր երկրներից։ Ներկայումս ՍՍՌՄ-ում սկսվել է քաղաքում միջնակարգ և գյուղում 7-ամյա պարտադիր ուսուցման իրականացումը։





«Մեզանում ժողովրդական ուսուցիչը պետք է դրվի այնպիսի բարձրության վրա, որի վրա նա երբեք կանգնած չի եղել, կանգնած չի և չի կարող կանգնած լինել բուրժուական հասարակության մեջ»:

Սովետական իշխանության տարիներին փայլուն կերպով կենսագործվել է Վլադիմիր Իլյիչի այս պատգամը։ Սովետական ուսուցիչը մեր երկրում առաջնակարգ տեղ է գրավում մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործում։ Նա շրջապատված է բոլշևիկյան պարտիայի, սովետական կառավարության, ամբողջ ժողովրդի ջերմ հոգատարությամբ։ Ներկայումս Սովետական Միության բոլոր դպրոցներում աշխատում են ավելի քան 1.250.000 ուսուցիչներ։ Տարեց-տարի ավելի է բարձրանում նրանց նյութական բարեկեցության մակարդակը։ Սովետական կառավարությունը բարձր է գնահատում ուսուցչի ազնիվ աշխատանքը։ Մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ կատարած երկարամյա և անբասիր աշխատանքի համար հազարավոր ուսուցիչներ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։ Այդ թվում

միայն Սովետական Հայաստանում պարգևա-
տրվածների թիվը կազմում է 2.234 հոգի։



Բանվորուհիների մոսկովյան համաքաղաքային անպարտիական կոնֆերանսում 1919 թվի սեպտեմբերի 25-ին սովետական ռեսպուբլիկայում կանանց բանվորական շարժման խնդիրների մասին արտասանած ճառում Վ. Ի. Լենինը նշեց.

«... Սոցիալիստական հասարակության կառուցումը կսկսվի միայն այն ժամանակ, երբ մենք, հասնելով կնոջ լիակատար հավասարության, նոր աշխատանքի ձեռնամուխ կլինենք՝ մանր, բթացնող, անարտադրողական աշխատանքից ազատագրված կնոջ հետ միասին»։

Սովետական իշխանության տարիներին բոլշևիկների պարտիայի, անձամբ մեծ Ստալինի շնորհիվ մեր երկրի բազմամիլիոն կանայք մեկընդմիշտ թոթափեցին դարավոր ստրկացման ու նվաստացման լուծը և կանգնեցին սոցիալիզմի կառուցման ակտիվ մասնակիցների առաջին շարքերում։

Տղամարդու հետ կնոջ հավասարության հոյակապ փաստը իր օրենսդրական վավերացումն է գտել Ստալինյան Կոնստի-



տուցիայում, որի 122-րդ հոդվածում ասված է. «Կնոջը ՍՍՌՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում»։ Այդ հոդվածի հիման վրա կատարված ընտրություններով ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են ընտրվել 277, Միութենական ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ՝ ավելի քան 1.700 կանայք։ Տեղական Սովետների դեպուտատներ են մոտ կես միլիոն կանայք։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների մոտ կեսը կազմում են կանայք։ 280.000 կին աշխատում են որպես ինժեներներ, տեխնիկներ, վարպետներ, արտադրության հրամանատարներ։ Հազարավոր կանայք կոլխոզների նախագահներ են։ Մոտ 700 կանայք արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։

Գյուղատնտեսության մեջ ձեռք բերած հաջողությունների համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչմամբ, շքանշաններով ու մեդալներով պարգևատրվածների մեջ կան ավելի քան 50.000 կին։

Հղի կանանց, բազմազավակ և միայնակ

մայրերին ցույց տրվող պետական օգնության վերաբերյալ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հուլիսի 8-ի Հրամանագրի հրապարակման օրվանից մինչև 1948 թվի հունվարի 1-ը, այսինքն մոտ 3 և կես տարում, բազմազավակ մայրերին վճարված է 7,3 միլիարդ ռուբլի նպաստ։ Այդ տվյալները հատկապես ցայտուն են Հայկական ՍՍՌ-ում, որտեղ մինչև 1949 թվի հունվարի 1-ը բազմազավակ մայրերին վճարված է 215 միլիոն ռուբլի նպաստ։

Մինչև 1949 թվի սկիզբը Սովետական Հայաստանում պարգևատրված բազմազավակ մայրերի թիվը կազմում էր 53.258, որոնցից «Հերոսուհի մայր» շքանշանով պարգևատրվածները՝ 592։

Սովետական Միության հարյուրավոր կանայք գիտության, գյուտարարության, արվեստի, գրականության ասպարեզում ձեռք բերած նվաճումների համար արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման։





# ՄԵՐ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՆՈՐ ՏԱՐՎԱ ՇԵՄՔԻՆ

Կենսագործելով ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարի որոշումները, Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը 1949 թվականին հասավ արտադրական լուրջ հաջողությունների։ Արտադրության տեխնիկական կուլտուրայի բարձրացման, նորագույն սարքավորումների ներդրման և նրանց լրիվ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման շնորհիվ գործարանի կոլեկտիվը 1949 թվականի հենց առաջին ամիսներից սկսեց կատարել ու գերակատարել պետական առաջադրանքները, գնալով ավելի ու ավելի խորացնելով ձեռք բերած նվաճումները։

Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ գործարանը 1949 թվականի առաջին եռամսյակում գրավեց 2-րդ տեղը և ստացավ 100 հազար ռուբլի դրամական պարգև։ Այդ մրցությունից գործարանը հաղ-

թանակով դուրս եկավ նաև 2-րդ և 3-րդ հնգամյակներում, շահելով ՀԱՄԿԽ-ի և ՍՍՌՄ էլեկտրամեքենաշինության մինիստրության փոխանցիկ դրոշը, միաժամանակ ստանալով 244 հազար ռուբլի դրամական պարգև։ 1949 թվականի տնտեսական տարին գործարանը փակեց պլանը 112,5 տոկոսով կատարած, երկրին տալով մեծ քանակությամբ արտապլանային արտադրանք։

Արտադրական այդ խոշոր վերելքը տեղի ունեցավ շնորհիվ գործարանում ծավալված սոցիալիստական մրցության, շնորհիվ բոլոր ցեխերում ու բրիգադաներում տարվող ագիտացիոն-մասսայական ամենօրյա աշխատանքի։

1949 թվականի պլանների կատարման ու գերակատարման գործին մեծապես նպաստեցին գործարանի ագիտատորները, որոնք հանդիսացան պարտիական կազմակերպության ու դիրեկցիայի ձեռնարկած բոլոր միջոցառումների ամենաակտիվ մասսայականացնողներն ու կիրառողները։ Գործարանի ագիտկոլեկտիվը, ուր ընդգրկված են 75 ագիտատորներ, ամբողջ տարվա ընթացքում յուրաքանչյուր անգամ կարողացավ առաջ քաշել օրվա հրատապ հարցերը, մոբիլիզացնելով ագիտատորներին՝ դրանք լուծելու հա-



մար։ Այսպես, օրինակ, հենց տարվա սկզբից ագիտատորների առաջ խնդիր դրվեց ամեն մի բանվորի հասցնել, նրա սեփականությունը դարձնել հերթափոխության, ցեխի, բրիգադայի գրաֆիկը։ Ագիտատորները պատվով կատարեցին այդ առաջադրանքը։ Զրույցների, ցուցադրական ագիտացիայի բազմազան ձևերի միջոցով ագիտատորները հասան այն բանին, որ յուրաքանչյուր օր բանվորներին հայտնի էր դառնում գրաֆիկը և նրա կատարման ընթացքը, յուրաքանչյուր բանվոր գիտեր իր մասնակցությունը այդ գրաֆիկի կատարման մեջ և ձգտում էր ետ չմնալ ընդհանուր տեմպից։ Եվ ահա գրաֆիկով աշխատելը մեր գործարանի համար դարձավ անխախտ օրենք, որի հետևանքով պետական առաջադրանքները օրեցօր, ամսե-ամիս կատարելը դարձավ կանոն։

Ագիտատորները լուրջ աշխատանք կատարեցին նաև աշխատանքային կարգապահության բարձրացման, արտադրության առաջավորների փորձի փոխանակման, արտադրության կուլտուրան բարձրացնելու ուղղությամբ։ Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես ագիտատորները առաջավոր բանվորների օրինակով սովորեցրել են ետ մնացողներին, օգնել նրանց կատարելու

իրենց առաջադրանքները։ Այսպես օրինակ, տրանսֆորմատորների խարիսխը հավաքողներ, երիտասարդ բանվորներ Ռ. Միրզոյանը և Վ. Մելիքբեկյանը տարվա սկզբին աշխատանքի ժամանակ հաճախ զբաղվում էին կողմնակի խոսակցություններով, ինչպես հարկն է չէին նախապատրաստում բանվորական տեղը, խուսափում էին տեխտիրապետման խմբակի պարապմունքներից։ Ագիտատոր Անուշավան Գևորգյանը հաճախակի զրույցներ ունեցավ նրանց հետ, ցույց տվեց, թե ինչպես թերակատարելով իրենց առաջադրանքները, նրանք խանգարում են ընկերների, ամբողջ ցեխի աշխատանքը, բացատրեց, թե ինչպես աշխատել առաջավոր ստախանովական բանվորների օրինակով։ Ագիտատոր Գևորգյանի այդ հետևողական, մանրակրկիտ աշխատանքի արդյունքն այն եղավ, որ Ռ. Միրզոյանը և Վ. Մելիքբեկյանը սկսեցին իրենց պլանները կատարել 200—250 տոկոսով, տալով բարձրորակ արտադրանք։

Մի ժամանակ տրանսֆորմատորների ցեխում մեծ թափթփվածություն էր տիրում, ամենուրեք թիթեղների ավելցուկների կույտեր էին դիզված։ Ցեխի ագիտատորները, ամենօրյա հետևողական բացատրական աշխատանքով, անձնական օրինակով հասան այն



բանին, որ տրանսֆորմատորների ցեխը ըստացավ գործարանին վայել կուլտուրական տեսք։ Այդ ցեխում այժմ պատրաստի մասերը հավաքվում են հատուկ տեղերում, վարպետների և ենթավարպետների համար ըստեղծված են աշխատելու և ղեկավարելու բոլոր պայմանները։ Տրանսֆորմատորների ցեխն այժմ իրավամբ համարվում է գործարանի ամենաառաջավոր ցեխը, այնտեղ բոլոր բանվորներն անխտիր կատարում ու գերակատարում են իրենց առաջադրանքները։ Ցեխի ձեռքումն է գտնվում միջցեխային փոխանցիկ դրոշը։

Բայց գործարանի ագիտատորները չեն հանգստանում ձեռք բերված հաջողություններով։ Պարտիական կազմակերպության հանձնարարությամբ ագիտատորները նոր տարվա հենց առաջին օրերից իրենց զրույցների ժամանակ մասսայականացնում են 1949 թվականին ձեռք բերած հաջողությունները և այն առաջադրանքները, որոնք այս տարի դրված են գործարանի կոլեկտիվի առաջ։ Որպես օրինակ կարելի է բերել գեներատորների հավաքման ցեխի ագիտատոր Սուրեն Պարոնյանի անցկացրած զրույցներից մեկը։

— Մեր ցեխը,—ասաց նա,—պատվով կա-

տարեց իր վերցրած պարտավորությունը։ Սիրելի առաջնորդ, մեծ ուսուցիչ ընկեր Ստալինի 70-ամյակի օրը մենք կատարեցինք գեներատորների թողարկման տարեկան պլանը, իսկ մինչև տարվա վերջը պլանից դուրս երկրին տվեցինք հարյուրավոր գեներատորներ։ Այսպիսով մենք անցյալ տարի, 1948 թվի համեմատությամբ արտադրեցինք 3,3 անգամ ավելի գեներատորներ։ Բայց այս մեզ չպետք է հանգստացնի։ Այս տարի մեզ առաջադրանք է տրված երկրին տալ 47 տոկոսով ավելի գեներատորներ, քան 1949 թվին, ընդ որում ի նկատի ունեցեք, որ բանվորական ուժը և սարքավորումը ավելանալու է միայն 10—12 տոկոսով։ Ուրեմն մեզ տրված առաջադրանքը պատվով կատարելու համար մենք ավելի լավ պետք է տիրապետենք մեր գործի տեխնիկային, լրիվ չափով օգտագործենք սարքավորումները, մտցնենք նոր կատարելագործումներ։ Իսկ այդ ամենը մենք կարող ենք անել։ Դրան որպես ապացույց կարող է ծառայել մեր գործարանի առաջավոր բանվորների աշխատանքի փորձը։ Մեր գործարանի ավելի քան 500 ստախանովականներ ժամկետից շուտ կատարեցին 1949 թվի պլանները և այժմ արդեն աշխատում են մարտ-ապրիլ ամիսների հաշ-



վին, ավելի քան 75 ստախանովականներ աշխատում են 1951—1953 թվերի հաշվին։ Այդպես ստախանովաբար աշխատելու հնարավորություն ունի մեզանից յուրաքանչյուրը։

Նման զրույցներ են ունեցել նաև ագիտատորներ Ա. Գևորգյանը, Գ. Սարգսյանը, Ն. Շատիրյանը, Հ. Տուրմանյանը, Պ. Գևորգյանը և ուրիշներ։

Ն. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի պարտբյուրոյի քարտուղար

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

### 26 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

*1. Լենինը բոլշևիկների մեծ պարտիայի հիմնադիրն ու առաջնորդն է։*

*2. Լենինը աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրն է։*

*3. Մեծ Ստալինի ղեկավարությամբ ստեղծված ու ամրապնդված Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինիզմի գաղափարների մարմնավորումն է։*

*4. Սովետական դեմոկրատիան լենինիզմի գաղափարների հաղթանակն է։*

*5. Լենինիզմը աշխատավորների կոմունիստական դաստիարակության հիմքն է։*

*6. Անցած 26 տարիների ընթացքում ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակները Վ. Ի. Լենինի պատգամների կենսագործման արդյունքն է։*



*7. Լենինիզմը կապիտալիզմի լծից ազատագրվելու համար ամբողջ աշխարհի աշխատավորության պայքարի դրոշն է։*

*9. Լենինի-Ստալինի պարտիան կոմունիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարի ղեկավարող և ուղղություն տվող ուժն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Լենինի մասին, *Հայպետհրատ, 1945 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1937 թվի դեկտեմբերի 11-ին:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին:

ՀամԿ(բ)Պ պատմություն, համառոտ դասընթաց, *էջ 362—370։*

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին: *Համառոտ կենսագրություն, գլուխ 7-րդ։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը: *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1949 թվականի նոյեմբերի 6-ին։ «Ս. Հ.» 7 նոյեմբերի 1949 թ.։*

Մ. ՍՈՒՍԼՈՎ.— Խաղաղության պաշտպանությունը և պայքարը պատերազմի հրձիգների դեմ: *Զեկուցում*

կոմունիստական պարտիաների Ինֆորմացիոն բյուրոյի խորհրդակցությանը 1949 թ. նոյեմբերի երկրորդ կեսին։ «Ս. Հ.» 4 դեկտեմբերի 1949 թ.։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ողջույնը ընկեր Ստալինին, մեծ առաջնորդին և ուսուցչին, Լենինի անմահ գործի շարունակողին: «Ս. Հ.» 21 դեկտեմբերի 1949 թ.։

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ընկեր Ստալինը պրոգրեսիվ մարդկության առաջնորդն է: «Ս. Հ.» 24 դեկտեմբերի 1949 թ.։

Ն. ՇՎԵՐՆԻԿ.— Ընկեր Ստալինը լենինիզմի մեծ գործի շարունակողն է: «Ս. Հ.» 5 հունվարի 1950 թ.։

II

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

1. Սովետական Միությունը հաղթանակած սոցիալիզմի երկիրն է։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սոցիալիստական հասարակություն կառուցած սովետական ժողովուրդը հաղթականորեն առաջ է գնում դեպի կոմունիզմ։

2. Սովետական հասարակական և պետական կարգը ամենաառաջավոր կարգն է աշխարհում։

3. Սովետական երկիրը աշխարհում ամենաառաջավոր, իսկական ժողովրդական դեմոկրատիայի երկիրն է։



4. Ստալինյան Կոնստիտուցիայի հիման վրա կատարվելիք ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրությունները կլինեն աշխարհում ամենադեմոկրատական ընտրությունները։

5. Սովետական ժողովուրդը Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին է գնում բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բուռն վերելքի պայմաններում, ապահովելով հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ժամկետից շուտ կատարումը։

6. Սովետական Միությունն ամբողջ աշխարհում խաղաղության հույսն ու պատվարն է։

III

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

1. Սովետական Միության Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունները տեղի են ունենում ընտրողների կողմից ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, փակ (գաղտնի) քվեարկությամբ։

2. Սովետական ընտրական սիստեմը ապահովում է մեր երկրի բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունը Սովետական Միության Գերագույն Սովետի ընտրություններին։

3. Սովետական ընտրական օրենքը անսասան կեր-

դով կանգնած է սովետական քաղաքացիների դեմոկրատական իրավունքների և ազատությունների պաշտպանության գործերում:

4. Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի ընտրությունները քաղաքական խոշոր իրադրություն են հանդիսանում ամբողջ սովետական ժողովրդի կյանքում:

5. Սովետական ընտրական սիստեմը նույնքան արմատապես տարբերվում է բուրժուական երկրների ընտրական սիստեմներից, որքան սովետական հասարակական և պետական կարգը տարբերվում է կապիտալիստական կարգերից:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին:

Ի. Վ. Ստալինի ճառերը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովներում 1937 թվի դեկտեմբերի 11-ին և 1946 թվի փետրվարի 9-ին:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան:

Կանոնադրություն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների: *«Ս. Հ.» 11-ն հունվարի 1950 թ.:*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ.— ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը և Սովետների խնդիրները:



Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Սոցիալիզմի Կոնստիտուցիան:

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում, 6-ին փետրվարի 1946 թ.:

Ն. ՇՎԵՐՆԻԿ.— Ստալինյան Կոնստիտուցիան սոցիալիստական հասարակության Կոնստիտուցիան է:

Ա. Յա. ՎԻՇԻՆՍԿԻ.— ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը:

Ա. Յա. ՎԻՇԻՆՍԿԻ.— Սովետական պետության Կոնստիտուցիոն սկզբունքները:

Զրույցներ ՍՍՌՄ հասարակական և պետական կառուցվածքի մասին: *(Նյութերի ժողովածու):*

Պարտիայի և կառավարության ղեկավարների ելույթները ընկ. Ի. Վ. Ստալինի ծննդյան 70-ամյակի կապակցությամբ:

Самая демократическая в мире избирательная система. «Правда», 11 января 1950 г. передовая.

—◆—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ԼԵՆԻՆ.— Երկեր, *11-րդ հատոր, 664 էջ, գինը 8 ռ.։*
ԼԵՆԻՆ.— Երկեր, *12-րդ հատոր, 643 էջ, գինը 8 ռ.։*
ՍՏԱԼԻՆ.— Երկեր, *10-րդ հատոր, 454 էջ, գինը 6 ռ.։*
ՍՏԱԼԻՆ.— Երկեր, *11-րդ հատոր, 434 էջ, գինը 6 ռ.։*
ՍՏԱԼԻՆ.— Երկեր, *12-րդ հատոր, 445 էջ, գինը 6 ռ.։*
*ՍՏԱԼԻՆԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՊՈԵԶԻԱՅՈՒՄ, 249 էջ, գինը 10 ռ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

*ՎՖ 01712* *Պատվեր № 23* *Տիրաժ 9.100*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 1 1950 г.